A. Banuch'yan, Եղիշէի Վարդանանց պատերազմի նորահայտ պատառիկները [Newly-Discovered Fragments of Eghishe's *Vardanants' War*], from *Banber Matenadarani*, volume 17 (2006), pp. 261-287, in 28 pdf pages.

ԱՐՇԱԿ ԲԱՆՈՒՉՅԱՆ

# ԵՂԻՇԵԻ ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՆՈՐԱՀԱՅՏ ՊԱՏԱՌԻԿՆԵՐԸ

*Եղիշեի «Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին» երկը բանասիրական բազմակողմանի քննության է ենթարկվել շուրջ երկու հարյուր տարի: Հայագետների՝ մեկը մյուսին հաջորդող բազմաթիվ սերունդներ են անդրադարձել հայ ժողովրդի «վասն հայրենեաց» եւ «վասն հաւատոյ» մղած 450-451 թթ.-ի ազատագրական, հերոսական ապստամբության պատմության ու այդ պատմության ականատես-ժամանակից Եղիշեի երկին ու ինքնությանը: Մեջտեղ են եկել «Վարդանանց պատերազմի» ոչ միայն պատմա-քաղաքական գնահատականներով ու վերլուծություններով հաճախ իրարամերժ, կարծիքներ ու տեսակետներ, այլեւ նորօրյա հետազոտողի սեղանին է դրվել հեղինակի կենսագրությանն ու նրա գործին վերաբերող ժամանակագրական եւ աղբյուրագիտական սովար, տարաբնույթ վարկածներով լի մի ժառանգություն, որոնցով զբաղվելը ժամանակ է պահանջում[1]:*

*Ըստ էության, Երվանդ Տեր-Մինասյանի հրապարակումներից եւ քննական հրատարակությունից հետո[2], Եղիշեի եւ նրա երկի շուրջ ծավալված*

---

[1] Հատկապես ԺԹ դարի վերջերից մինչեւ Ի դարի 60-ական թվականները Եղիշեի «Վարդանանց պատմության» բուռն բանավեճի շրջանն էր: Այս բանավեճի ամենահայտնի հեղինակներից են Եր. Տեր-Մինասյանը, Մ. Աբեղյանը, Հ. Ք. Արմենը, Վ. Հացունին, Գր. Տեր-Պողոսյանը, Գր. Խալաթյանը, Բաբգեն Կյուլեսերյանը, Նիկ. Ադոնցը, Ներսես Ակինյանը եւ այլոք: Հիշված եւ այլ այլ հեղինակների վաստակի մասին տե՛ս Հ. Անասյան, «Մատենագիտություն» - Եղիշէի Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին, Ի լոյս ածեալ բաղդատութեամբ ձեռագրաց, աշխատութեամբ Ե. Տէր-Մինասեանի, Երեւան 1957, էջ՝ 204-219. ինչպես նաեւ Երվանդ Տեր-Մինասյանի 1971 թ.-ի աշխարհաբար թարգմանության «Մատենագիտություն»ն (էջ՝ 223-226) ու Պողոս Լեւոն Զեքիյանի «Եղիշեի երկը որպես վաղ հայկական եկեղեցու եկեղեցաբանության վկայություն» հոդվածը, Էջմիածին, 1990, Ա, էջ 40, ծնթ. 2:

[2] Տե՛ս Երվանդ Տեր-Մինասյանի հետեւյալ կարեւոր հրապարակումներն ու հրատարակությունները՝
«Եղիշեի Վարդանանց պատմությունը եւ նրա նորագույն քննադատը», Տեղեկագիր

*բուռն բանասիրական բանավեճը թվում է, թե մարել էր, տիրող տեսակետ թողնելով Ե. Տեր-Մինասյանի միակ արժանահավատ եւ գիտականորեն հիմնավորված հետեւյալ եզրահանգումը`* «Եղիշեի «Վարդանանց պատմության» սկզբնագիրն անկասկած Ե դարի երկրորդ կեսի 460-464 թվականների գործ է, գրված է ականատես մարդու կողմից, եւ վերաբերում է 451 թվի ապստամբությանը: Բայց, ինչպես մեր բոլոր հին մատենագիրները, այնպես էլ Եղիշեի պատմությունը հետագայում, զուցե եւ Է դարում, թերեւս նույնիսկ 572-ի ապստամբության եւ նրան հետեւող պատերազմների դեպքերի ու հիշողությունների ազդեցությամբ, կարող է մասնակի կետերում ենթարկված լինել որոշ խմբագրման»[1]:

*Կարծես ամեն ինչ ասված է: Սակայն, մեր օրերում եւս, արտերկրյա հանդեսներում եւ առանձին հրատարակություններում շարունակվում են Եղիշեի ապրած ժամանակի եւ «Վարդանանց պատերազմի» մասին մտացածին, «բանասիրական մտավարժանքների» արդյունք եզրակացություններ, որոնք, հաճախ անտեսելով իրենց կարծիքները հերքող աշխատությունները, «գերքննադատության» հովերով տարված` Եղիշեին ու նրա պատմական գործը տարուբերում են տարբեր ժամանակների մեջ*[2]:

*Այսուհանդերձ այս բանավեճում առաջադրված հարցերի քննարկումը դուրս է սույն հրապարակման նպատակներից: Հոդվածիս շարժառիթը վերջերս Մատենադարանին նվիրաբերված ԺԷ դարի ձեռագիր «Ժամագրքի» կազմի փեղկերին կից մագաղաթե, երկաթագիր պատառիկ-պահպանակների հայտնաբերումն է: Վերծանելով պարզեցինք, որ այն Եղիշեի «Վարդանանց պատերազմի» Է. եղանակից հատվածներ ունեցող մի մասունք է*[3]:

---

ՍՍՀՄ գիտությունների Ակադեմիայի հայկական ֆիլիալի, Երեւան, 1943, թիվ 3, էջ 63-98:

«Եղիշեի Վարդանանց պատմության մասին եղած քննությունների շուրջը», Տեղեկագիր ՀՍՍՀ գիտությունների Ակադեմիայի, Հասարակական գիտություններ, Երեւան 1944, թիվ 1-2, էջ 89-103:

«Եղիշեի Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին», ի լոյս ածեալ բաղդատութեամբ ձեռագրաց, աշխատութեամբ Եր. Տէր-Մինասեանի, Երեւան, 1957 թ. (այս հրատարակության համար այսուհետ «գիտական հրատարակություն» ձեւով): Ինչպես նաեւ` Եղիշե, «Վարդանի եւ հայոց պատերազմի մասին», աշխարհաբար թարգմանություն, ներածությամբ եւ ծանոթագրություններով, Երեւան, 1971 թ.:

[1] Տե՛ս Եղիշե, «Վարդանի եւ հայոց պատերազմի մասին», աշխարհաբար թարգմանություն, Եր. Տեր-Մինասյան, Երեւան, 1971 թ., էջ 16:

[2] Այս մասին տե՛ս Ա. Այվազյան, «Հայաստանի պատմության լուսաբանումը ամերիկյան պատմագիտության մեջ» աշխատությունը, Երեւան 1998 թ.: Եղիշեի մասին էջեր 155-169:

[3] Ձեռագիրը մուծվել է Մատենադարանի հայերեն հիմնական հավաքածո եւ կրում է 11140 համարը:

Մինչ այս նորահայտ ձեռագրի եւ պատառիկ-պահպանակների վերծանությանն ու ուսումնասիրությանը անցնելը, փոքր-ինչ անդրադառնանք «Վարդանանց պատերազմի» հայտնի եւ առ այսօր անհայտ երկաթագիր պատառիկներին:

Պետք է ասել, որ «Վարդանանց պատերազմի» գիտական հրատարակության մեջ պատառիկ-պահպանակներ չեն օգտագործվել[1]: Եր. Տեր-Մինասյանի հիմնական նպատակը եղել է Եղիշեի՝ «Վարդանանց պատերազմի» շրջանառության մեջ գտնվող բնագրի «ձեռագրաց բաղդատությամբ» քննությունը, եւ այդ իսկ նպատակով իր քննության հիմքում դրել է «Անձեւացյաց օրինակ»ը[2]: Ձեռքի տակ եղած պատառիկ-պահպանակներն այս բնագրի համար նոր, արժեքավոր տարընթերցումներ չեն տվել, ուստի եւ հայագետն իրավամբ անիմաստ է համարել մի քանի փոքրիկ հատված պարունակող պատառիկներն ամբողջական ձեռագրերի կողքին դնելը[3]: Ուրեմն Եղիշեի երկի «խմբագրումներ»ի, «հավելած» կամ առավել եւս «համառոտած» հատվածների մասին գիտական հրատարակությունում խոսք լինել չի կարող: Այն արդեն իսկ «խմբագրված» օրինակի գիտական հրատարակություն է:

Եղիշեի երկի նախնական, մինչեւ «խմբագրում»ը կամ «խմբագրումներ»ը եղած բնագրի վերականգնումը բնագրագիտական-աղբյուրագիտական լուրջ աշխատանք է պահանջում: Այս գործին մեծապես կարող են նպաստել ոչ միայն Ղ. Փարպեցու եւ Եղիշեի երկերի առնչությունների ու այլեւայլ աղբյուրների հետ աղերսները, այլեւ գիտական հրատարակության տարընթերցումների ու պատառիկ-պահպանակների ուսումնասիրությունը: Հատկապես, եթե նկատի ունենանք, որ վերջիններս «Վարդանանց պատերազմի» հնագույն օրինակներից մնացած մասունքներ են: Ըստ որում, մեզ հայտնի պատառիկների մեծ մասը նոր ընթերցումներ են տալիս, որոնք գիտական հրատարակության համար օգտագործված ձեռագիր

1 Օգտագործված տպագիր եւ ձեռագիր օրինակների եւ առհասարակ քննության սկզբունքների մասին տե՛ս Եր. Տեր-Մինասյանի 1957 թ.-ի հրատարակության ընդարձակ «Առաջաբանն» ու «Ներածությունը» (էջ Ե-ՄԹ):

2 Տե՛ս նույն տեղում, էջ ԺԸ:

3 Գիտական հրատարակության ԽԶ-ԽԷ էջերի ծանոթությունում Արռվի՝ Վենետիկից բերած նյութերի շարքում հիշատակում է երկու պատառիկների, ինչպես նաեւ Ղեւոնդ Տայեանի՝ 1911 թ.-ին Վենետիկում հրատարակած «Եղիշեի չորս եղանակները հնագոյն գրչագրի մը մէջ» աշխատանքը, որի համեմատության հիմք եղած ճառընտիրը քննության համար օգտագործել է, իսկ հավելվածում տպագրված պատառիկ պահպանակները՝ ոչ: Ինչպես ինքը՝ հեղինակն է գրում նույն ծանոթությունում. «...համեմատությունը ցույց տվեց, որ դրանք ոչ մի աչքի ընկնող այլընթերցված չեն տալիս, որ մեզ հայտնի չլիներ մեր ձեռքին եղած որեւէ ձեռագրից»:

*ու տպագիր օրինակների հետ միասին կարող են նոր լույս սփռել Վարդանանց հերոսամարտի վիճելի հարցերի վրա:*[1]

*Եղիշեի «Վարդանանց պատերազմի» գիտական հրատարակությունը նախորդել է Մատենադարանի հայերեն ձեռագրերի «Ցուցակ ձեռագրաց» առաջին եւ երկրորդ հատորների հրատարակությանը*[2]*: Թե Մատենադարանում պահվող հազարավոր ձեռագրերից որ մեկի մեջ կարող էին «Վարդանանց պատերազմի» հատակտորներ լինել, մեծանուն հայագետը կարող էր եւ չիմանալ: Իսկ պատառիկ-պահպանակների հավաքածուն համալրած նոր նմուշները, ըստ ամենայնի, նա չէր էլ տեսել: Սակայն հրատարակված պատառիկներն, անշուշտ, չեն վրիպել նրա ուշադրությունից: Ավելորդ չենք համարում թվարկել այդ օրինակները՝*

Ա. *1893-ին Ֆ. Կ. Կոնիբերի հրատարակած Լիոնի համալսարանի թիվ 15 ձեռագրի կազմից դուրս եկած երկու մագաղաթե թերթերը*[3]*, որոնք պարունակում են Եղիշեի «Վարդանանց պատերազմի» Ե. եղանակի 146-171 եւ Զ. եղանակի 9-10 նախադասությունները*[4]*: Ընդ որում*

*ա) Աա. թերթի ձախ սյունակը վնասված է, եւ յուրաքանչյուր տողում պահպանված 1-5 գրերով հնարավոր չի լինում պարզել Ե. եղանակի 146-րդ նախադասությանը նախորդող հատվածը: Սակայն, ինչպես հրատարակիչն է նշում, իր համեմատած Մոսկվայի 1892 թվականի հրատարակության օրինակը թույլ չի տալիս վերականգնել այդ հատվածը:*

*բ) Աբ. էջում պակասում է 151-152 հատվածը՝* «Եւ ճանզի զարնանային … զվայ եւ զաւաղ բարեկամացն»:

գ) *Բբ. էջում պակասում է Ե. եղանակի 171-րդ նախադասությունից*

---

[1] Երվանդ Տեր-Մինասյանն ինքն է հուշում մեզ իր գիտական հրատարակությունից հետո կատարելիք աշխատանքները. *«Բայց, ինչպես մեր բոլոր հին մատենագիրները, այնպես էլ Եղիշեի պատմությունը հետագայում, գուցե եւ է. դարում, թերեւս նույնիսկ 572-ի ապստամբության եւ նրան հետեւող պատերազմների դեպքերի ու հիշողությունների ազդեցությամբ, կարող է մասնակի կետերում ենթարկված լինել որոշ խմբագրման»:* Նույնը տե՛ս նաեւ «Եղիշեի Վարդանանց պատմության մասին եղած քննությունների շուրջը», Տեղեկագիր ՀՍՍՀ գիտությունների Ակադեմիայի, Հասարակական գիտություններ, Երեւան 1944, թիվ 1-2, էջ 89-103:

[2] Առաջին հատորը հրատարակվել է 1965-ին, իսկ երկրորդը՝ 1970-ին:

[3] Կոնիբեր Ֆ.Կ., Եղիշեի պատմության հատակտոր, «Հանդէս Ամսօրեայ», 1893, էջ 129-133: Ստորագրված է «Կոնիբիր Փր. Կ.»:

[4] Նախադասությունների համարները ըստ «Մատենագիրք Հայոց», մատենաշարի: Ա հատոր, Ե. Դար, Անթիլիաս-Լիբանան, 2003թ.: Եղիշեի «Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին» երկը գտնվում է 521-764 էջերում: Հատորը հրատարակության է պատրաստվել «Հայ դասական մատենագրության թվային գրադարանում»: Մատենաշարն հրատարակվում է «Գալուստ Կյուլպենկյան հիմնարկության» եւ Մեծի Տանն Կիլիկիո կաթողիկոսության համագործակցությամբ:

«բեկաւ անկաւ զաւրութիւն ուժոյն իւրոյ, ...» մինչեւ Զ. եղանակի 7-րդ նախադասության կեսը «...հրամայեաց սպանանել ի նոցանէ...»: Այս ամբողջի փոխարեն Ե. եղանակը, առանց Զ.-ի վերնագրի, միմյանց է կապվում հետեւյալ հատվածով «...իսկ (՞) ի գնդին Հայո՞ցն ինչ յամրոցի, եւ երբեալ զաւրն պարսից գալ ի խաղաղութիւն, որոյ եկեալ...»: Կոնիբերի այս հրատարկության մասին բազմաթիվ հրապարակումներ են եղել: Սխալված չենք լինի, եթե ասենք, որ Եղիշեի դեմ սանձազերծված հարձակումների շարժառիթներից մեկը հենց այս պատառիկն է եւ հատկապես Ե-Զ. գլուխների տարանջատում չունենալը:[1]

Բ. Պատառիկներին վերաբերող երկրորդ հրապարակումը Հ. Աճառյանի 1906-ին «Բազմավէպում» հրատարակած հոդվածն է[2]: Արեւմտյան Հայաստանում իր ճամփորդության ընթացքում տեսած մի քանի ձեռագրերի մասին պատմելուց հետո, հեղինակը հայտնում է, որ Մարաշում ձեռագրերից «...մեկուն կողքին, ներսի կողմը...» գտել է «...Եղիշէէն կտորներ, որոնք...» իրեն «...ձեռագրէն աւելի յարգի թուեցան, եւ առանց մեծի դժուարութեան» կարողացել է «ստանալ զանոնք...»: Այս պատառիկների ներկայումս ուր գտնվելն առայժմ հայտնի չէ: Հեղինակի «...կրցայ ստանալ զանոնք...» արտահայտությունից կարելի է եզրակացնել, որ վերցրել է այս պատառիկները: Պատառիկն ունի Եղիշեի Ա., Բ., Դ. եւ Ե. եղանակներից հատվածներ: Ինը մասի բաժանված չորս թերթ է: Գրությունը՝ եռայուն: Գիրը՝ երկաթագիր: Տողերի քանակը ենթադրում է, որ 35 պետք է եղած լինի: Նյութը՝ հին թուղթ է: Թղթի հնությունից եւ գրության ձեւից կարծում է, որ պատառիկը ԺԲ. դարի է: Հեղինակն այն համեմատել է Վենետիկի 1903 թվականի հրատարակության հետ:

Հաջորդ հրապարակումը Հայր Ղեւոնդ Տայեանի՝ 1911-ին Վենետիկում հրատարակած «Եղիշէի չորս եղանակները հնագոյն գրչագրի մը մէջ» աշխատանքի հավելվածում առկա երկու պատառիկներն են[3]: Սրանցից առաջինը Մխիթարյան միաբանությունում շրջանակի մեջ առնված Եղիշեի Ե.-

---

[1] Ցավոք, ձեռքի տակ չունենք այս պատառիկի լուսանկարը, որ կարողանանք հնարավորին չափ ավելի տեղեկություններ քաղել: Մանավանդ, որ Կոնիբերն ինքը Բբ. էջի վերծանության համար նշում է, թե «...10-րդ տողին համար՝ պէտք է կրկին անգամ համեմատել հատակոտորը, վասն զի գուցէ տառերէն մէկ բանին սխալ կարդացած ըլլամ»: Նույնպես Բբ. էջի երկրորդ սյունակի 18-19 տողերը: Իսկ որոշ տեղերում էլ, կարծում ենք, սխալ է վերծանում: Ինչպես օրինակ նույն Բբ. էջի վերջին տողում «զի մինչ» բառակապակցությունը կարդացել է «զի մի ոչ»:

[2] Աճառյան Հ., Եղիշէի Պատմութեան նորագիւտ հատակոտորներ, «Բազմավէպ», 1906, էջ 7-9, 59-64 եւ 110-114:

[3] Հ. Ղ. Տայեան, Եղիշէի չորս եղանակները հնագոյն գրչագրի մը մէջ, Վենետիկ, 1911:

րդ եզանակի սկիզբն է.

Գ. «Վկայութիւն Սրբոյն Վարդանա եւ Հմայեակա եւ Վահանա եւ Սահակա Հայոց Սպարապետաց եւ ամենայն սուրբ արանց որք մեռան ի Քրիստոս, Մեծ է սէրն Աստուծոյ քան զամենայն սէր երկրաւորս եւ այնպէս աներկեւղս առնէ զմարդիկ իբրեւ զանմարմինս Որպէս անտառին ի սկզբանէ ի տեսանել բազում տեղիս Սիրովն Աստուծոյ…»։

Դ. Իսկ երկրորդը Սեբաստիայում Ի. դարի սկզբում գտնված մի ծաշոցի պատառիկ-պահպանակների արտագրություն-վերծանություններ են[1]։ 1910-ական թվականներին այս պատառիկի բնօրինակը տեսել է Թ. Գուշակյանը եւ վերծանելով, ավելի ուշ, 1932-ին հրատարակել է «Սիոն» ամսագրում[2]։ Պատառիկը հատվածներ ունի Եղիշեի Ե. եւ Ը. եղանակներից։ Մագաղաթե չորս թերթեր են։ Երկսյուն, գիրն ուղղագիծ երկաթագիր։ Մատենադարանում թվագրել են Ժ.-ԺԱ. դարերով։ Ունի ուշագրավ տարընթերցումներ։ Բարեբախտաբար այս պատառիկը ներկայումս գտնվում է Մատենադարանի պատառիկների հավաքածուում եւ կրում է 1887 համարը[3], ուստի սրա մասին կխոսենք Մատենադարանի պատառիկների հետ միասին :

Վերոհիշյալ չորս օրինակներով էլ սահմանափակվում են Տեր-Մինասյանի ձեռքի տակ եղած պատառիկները։ Ինչպես արդեն նշել էինք, օգտագործված ձեռագրերից տարբեր, նոր ընթերցումներ չստանալով այս պատառիկներից, Տեր-Մինասյանը դրանք չի օգտագործել գիտական հրատարակությունում։

Ե. Վերջերս լույս տեսավ պրոֆ. Կ. Յուզբաշյանի կազմած Ս. Պետերբուրգյան հավաքածուների հայերեն ձեռագրերի ցուցակը[4], որտեղ 423

[1] Հ. Ղ. Տայեանի հաղորդման համաձայն «…օրինակութիւն էր ամբողջ Հ. Ներսէս Սարգսեանի, որ եւսեւ յիշատակարանին մէջ սա ծանօթութիւնը դրած է. «46 գլուխ քանիցս գաղափարեցան ի Մարգուան ի դպրատան Հայոց ի սեպ. 26-1844, ի բոլորգիր անրուական օրինակէ աղօթագրաց, որոյ ի կատարածին կայր եւ քաղուած ի Մաշտոցէ»»։ Տայեանի այս ծանոթությունը կապ չունի Եղիշեի պատառիկների հետ, քանի որ, ինչպես հետո պարզեցինք, պատառիկները միջին մեծության երկաթագրով գրված մագաղաթյա թերթեր են։ Իսկ ծանոթությունը վերաբերում է տեխստում հիշատակված «Աղօթագրքին» եւ «Մաշտոցին»։

[2] Թորգ. Գուշակեան, «Հատուկտորներ Եղիշէի Վարդանանց պատմութենէն», Սիոն, 1932, էջ 210-218; Ստորագրված՝ «Թ.Ե.Գ.»։ Պատառիկների այս հրատարակության վերծանությունը միջնորդավորված չէ, ավելի խնամքով է կատարված եւ նախընտրելի է։

[3] Պատառիկը 1965-ին Մատենադարանին է նվիրաբերել Մատենադարանի մեծ բարերար Հարություն Հազարյանը, որի հավաքածուում այն կրում էր 16, 17 եւ 18 համարները։

[4] К.Н. Юзбашян, "Армянские рукописи в петербургских собраниях", Каталог.- Православный "Палестинский сборник", Выпуск 104, С. Петербург-2005.

*համարի ներքո (էջ 193) հեղինակը համառոտ տեղեկություններ է տալիս Կ. Կոստանյանի շուրջ 50-ի հասնող պատառիկների հավաքածոյի մասին[1]: Մասնավորեցնելով միայն C44[12] համարը կրող «Եղիշեի վարդանանց պատմության» պատառիկը, ցուցակի հեղինակը ընդհանուր տվյալներ է հաղորդում պատառիկի չափերի մասին (այն է՝ 19.5x11.7), այնուհետեւ՝ էջերի ու տողերի համարներով համապատասխանեցնում է պահպանված հատվածները Ե. Տեր-Մինասյանի գիտական հրատարակության հետ: Ցուցակից տեղեկանում ենք նաեւ, որ պատառիկների սույն հավաքածոյի զգալի մասը մագաղաթից է, եւ կան որոշ քանակությամբ մանրանկարներ: Ցավոք ձեռագրագիտական տվյալներն այսքանով սպառվում են: «Եղիշեի վարդանանց պատմության» Ս.Պետերբուրգյան պատառիկի մասին մանրամասներ մեզ հայտնի են դառնում «Հանդէս Ամսօրեայ» հայագիտական ուսումնաթերթում հրապարակված պրոֆ. Պարույր Մուրադյանի «Հայկական ձեռագրական հաւաքածոները Ռուսաստանում եւ Եղիշէի պատմութեան մի նոր պատառիկ»ը վերտառությամբ հոդվածից եւ պահպանված հատվածի վերծանությունից[2]: Այն է՝ պատառիկն ունի երկու առանձին թերթեր, պահպանվել են հատվածներ Եղիշեի Գ եղանակի 117-124; 150-154 նախադասություններից: Գրությունը՝ անցման շրջանի ուղղագիծ երկաթագիր է, պահպանված տողերի քանակը՝ 21 (վերնամասից պակասում է 2-3 տող), նյութը՝ հաստ եւ ողորկ թուղթ է:*

*Եղիշեի «Վարդանանց պատերազմի» հատվածներ ունեցող պատառիկների մասին մեզ հայտնի վերջին հրապարակումները այսքանով սահմանափակվում են:*

*Մատենադարանի հայերեն պատառիկների հավաքածուում պահվում են ութ մագաղաթե՝ երկաթագիր, եւ մեկ թղթե՝ բոլորգիր, պատառիկներ: Սրանցից մեկը (վերը հիշված թիվ 1887-ը) ճառընտիրի մաս է, մեկը՝ (թիվ 354-ը) Յայսմաւուրքի, չորսը (հմրք. 1107;1197;1201;1202-ը), ըստ ամենայնի, հենց պատմագրքի մասեր են: Մատենադարանի պատառիկ-պահպանակ ունեցող ձեռագրերից «Վարդանանց պատերազմի» մասունքներ ունեն են միայն երեքը՝ հայերեն հիմնական հավաքածուի ձեռ. թիվ 744-ը, թիվ 8985-ը եւ վերջերս*

[1] Կ. Կոստանյանի Պատառիկների հավաքածուն ներկայումս գտնվում է Ռուսաստանի Գիտությունների Ակադեմիայի Արեւելագիտության ինստիտուտի Ս. Պետերբուրգյան բաժանմունքի գրադարանում եւ զետեղված է C43-C44 համարների ներքո:

[2] Պ. Մուրադյան, «Հայկական ձեռագրական հաւաքածոները Ռուսաստանում եւ Եղիշէի պատմութեան մի նոր պատառիկ», Հանդէս Ամսօրեայ հայագիտական ուսումնաթերթ. Թիւ 1-12, 2006թ., էջ 54-62:

նվիրաբերված ձեռ. թիվ 11140-ը: Բնկալ ձեռագրերից[1] առաջինը 1638-ին Աղճայղալայում գրված ժողովածու է (գրիչ եւ ստացող՝ Յովանէս), իսկ երկրորդը ԺԶ. դարում օրինակված ժամագիրք: Ձեռ. 11140-ը ԺԷ. դարում օրինակված ժամագիրք է: Այսպիսով «Վարդանանց պատերազմի» մեզ հայտնի մասունք-պատառիկների տասներեք օրինակներից հրապարակվել են միայն հինգը:

Ստորեւ ներկայացնում ենք նորահայտ՝ ՄՄ 11140 ձեռագրի նկարագրությունը եւ պատառիկ-պահպանակի հնագրագիտական, բնագրագիտական եւ ժամանակագրական քննությունը:

## Նկարագրություն Բնկալ ձեռագրի

ժամագիրք: ԺԷ դար: *Վայրը*՝ անհայտ: *Գրիչ, ծաղկող, կազմող, ստացող*՝ անհայտ: *Թերթեր*՝ 153: *Պրակներ*՝ Ա(10)+Բ-Ջ(12)+Է(11)+Ը-ԺԴ(12): *Մեջքի կար*՝ ունի սնբեկերի երեք անցք (ա-գ), վերից վար մեկը մյուսից հեռու են՝ եզրից ա-ն 2սմ, ա-ից բ-ն՝ 3,5սմ, բ-ից գ-ն՝ 3,5սմ, գ-ից ներքևի եզրը՝ 2սմ: *Նյութը*՝ մագաղաթ: *Մեծություն*՝ 10x7x3,9: *Գրություն*՝ միասյուն:

*Գրադաշտը՝ լայնքը* - մեջքից՝ 1սմ, *սյունակ*՝ 6x3,7; *լուսանցային գրության համար սյունակից*՝ 0,8սմ, *սյունակից եզրը*՝ 2,3սմ: *Բարձրությունը*՝ *վերին եզրից*՝ 1սմ, *սյունակ*՝ 6սմ, *սյունակից ներքևի եզրը*՝ 2,5սմ: *Ընդհանուր*՝ 6x3,7: *Տող*՝ 15, (0,4սմx3,6սմ): *Գիր*՝ բոլորգիր, *պրականիշերը*՝ նոտր:

*Գրության տող*՝ 0,1սմ: *Կազմ* կաշեկազմ, դրոշմազարդ տախտակ:

*Մանրանկար*՝ ճակատազարդ, լուսանցազարդ: *Զարդագրեր*՝ հանգուցագիր: *Լուսանցազարդեր*՝ կարմիր:

*Գրչության հիշատակարան*՝ 153բ «Զմեղապարտ գծագրօղս յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր միով հայր մեղայիւ. և դուք ///» *(անավարտ)*:

*Հիշատակարան հնատպի*՝ 1ա. - «Վայ և եղուկ **յԵվդոկացի Ակոբ դպրիս**. և անարժան սպաս[աւորի] **Ս[ուր]բ Քառասնիցն**. որ վ[աս]ն ծովացեալ մեղաց իմոց. զմիս մօր եւ շնորհալի որդեակն իմ տ[ի]ր[ա]ց[ո]ւ **Աւետիքն** ժանտացաւօք առ Ա[ստուա]ծ փոխեցաւ. և եղև փեսայ Ք[րիստոս]ի [ԻԶ. (26) ամաց] գոլով: .ՌՄԻԱ. (1772) թուին յուլիսի .ԺԴ. (14) օրն կրակի:

---

[1] Այսուհետ այն ձեռագիր մատյանների համար, որոնցից պատրաստվել են պահպանակներ, օգտագործելու ենք «մայր ձեռագիր» եզրը, իսկ այն ձեռագրերի համար, որոնց մեջ «մայր ձեռագրի» թերթերն օգտագործվել են որպես պահպանակներ, օգտագործելու ենք «բնկալ ձեռագիր» եզրը: «Բնկալ ձեռագիր» եզրը մեզ առաջարկել է Մատենադարանի գլխավոր ավանդապահ Գ. Տեր-Վարդանյանը, որի համար շնորհակալ ենք եւ կարծում ենք այն լավագույնս բնորոշում և համապատասխանում է իր իմաստին:

Ով զգիրս վայելէ. և զ[գիրս] կարդ[ա]յ. Յօժար սրտիւ Ողորմի տայ: Տէր Յիսուս իւրեանն գըթայ. Ամէն. Հ[ա]յր մ[եր]»:

*բ. Հիշատակագրությունները դժվար ընթեռնելի՝ 77բ, 129ա:*

*Պահպանակ՝* Եղիշէ, «Վասն Վարդանայ եւ հայոց պատերազմին»: Մասն՝ է եղանակից: *Ժամանակը՝* ԺԲ դար: *Պահպանված հատվածները կարգով՝* Բբ-Աա՝ 35-36; 42: Աբ-Բա՝ 55-56; 62-63: Դբ-Գա՝ 310-311; 314-316: Դա-Գբ՝ 317-319; 321-324:

*Թերթեր՝* 4 (ԱԲ+ԳԴ), *մեկական թերթեր երկայնքով ծալված: Կտրատված՝* ԱԲ-ն՝ ներքին եզրով, ԳԴ-ն՝ պահպանվել է միջին մասը: *Գրականիշեր՝* չեն պահպանվել: *Նյութ* մագաղաթ: *Մեծություն՝* ԱԲ՝ 9x13,5; ԳԴ՝ 10x13,5: *Գրություն՝* երկսյուն: *Գիր՝* մանր ուղղագիծ երկաթագիր: *Տող՝* Բբ-Աա;Աբ-Բա-8: Դբ-Գա;Դա;Գբ-10: *Գրության տող՝* 0,7սմ: *Սյունակների չափեր՝* Ա սյունակ՝ *7սմX[19սմ];* Բ սյունակ՝ *կիսված 3,5սմ+[3,5սմ]X[19]սմ:* Սյունակների միջեւ՝ *1,5 սմ:*

*Մայր ձեռագիրը տեսականորեն հնարավոր է վերականգնել միայն պատառիկի մանրամասն հնագրագիտական-ձեռագրագիտական քննությամբ: Վերականգնելով մայր ձեռագրի պատկերը՝ թերեւս հնարավոր կլինի պարզել՝ պահպանակը Պատմագրքի, թե Ճառընտիրի մաս է:*

*Համեմատության համար օգտագործել ենք թե՛ Երվանդ Տեր-Մինասյանի քննությամբ հրատարակված 1957 թ.-ի հրատարակությունը, եւ թե՛ «Մատենագիրք Հայոց» մատենաշարով հրատարակված նույնի վերահրատարակությունը[1]: Վերջինս համեմատությունների համար բավական դյուրություն է ստեղծում, քանի որ յուրաքանչյուր եղանակի ներսում նախադասությունները համարակալված են: Պատառիկ-պահպանակի մեր վերծանության մեջ օգտագործել ենք թե այդ համարակալումը, եւ թե տարընթերցումները[2]:*

*Մայր ձեռագրի գրության դաշտի չափերը վերականգնել ենք՝ նկատի առնելով այն հանգամանքը, որ պահպանակներ Ա.-Բ.-ում պահպանվել են ձեռագրի ներքին լուսանցքի մասերը: Սա նշանակում է, թե Ա. եւ Բ. պահպանակների առաջին սյունակները վերջանում են, եւ պակասող հատվածները երկուսում էլ կարող են զետեղվել միայն բ. սյունակների վերեւում: Պակասող հատվածների նիշերի քանակը հաշվել ենք «Վարդանանց*

[1] Տե՛ս էջ 227, ծնթ. 4:

[2] Թե բնագիրը եւ թե տարընթերցումները երկու հրատարակություններում էլ՝ երկրորդը առաջինի հետ, ստուգել ենք: Ի պատիվ «Մատենագիրք Հայոց» մատենաշարի պատրաստողների, պետք է ասել, որ բնագիրը բավական բարեխղճորեն է վերահրատարակվել:

պատերազմի» գիտական հրատարակությունում, համադրելով այս տվյալը մեկ տողում գրերի առավելագույն քանակի հետ՝ պարզել ենք, որ պահպանակներում տողերի քանակը կարող էին լինել՝[1]

| Էջերում սյունակից սյունակ Պահպանակի էջերը | Գրերի քանակը | Տողեր՝ ենթադրելի եւ պահպանված | տողեր |
|---|---|---|---|
| Բր-Աա. | 645 | 32+8 | 40 |
| Ար-Բա. | 451 | 21+8 | 29 |

Այսօրինակ հաշվումներում հնարավոր է վրիպել առավելագույնը 1-2 տողի չափով: Սակայն տողերի քանակի այսպիսի մեծ տարբերությունը (29-40՝ 11 տող) միայն կարող է նշանակել, որ պահպանակների բնագիրը հատվածների պակաս ունի: Գիտական հրատարակության համար օգտագործված եւ ոչ մի ձեռագիր բնագրային այսպիսի տարընթերցված չունի, որով եւ այս պահպանակը ավելի է կարեւորվում:

Փորձենք Ա.-Բ. պահպանակների բնագրային քննությամբ պարզել, թե որ հատվածներն են պակասում պահպանակի այս էջերում:

Պահպանակի Բր.-Աա. էջում չի պահպանվել 36-րդ նախադասության «...հա[նգչել, եւ տեսանէր...]» մասից մինչեւ 42-րդ նախադասության «...[Յայնժամ ճշմարտեալ գիտաց մոգպետն. Եթէ ոչ այլ ընդ այլոյ տեսանէր որ երեւեցաւն նմա, այլ ի նոցունց յանձանց]» սյունակից սյունակ հատվածը: Գիտական հրատարակության տարընթերցումներով հնարավոր է դուրս հանել միայն 36-ից «զի», 37-ից «Զի՞նչ է այս մեծ սքանչելիս.», 38-ից «լուսոյ», 39-ից «իմ», «վասն կեշտիս այսորիկ», մեկ «եւ» եւ մեկ «ինձ», իսկ 42-ից «նմա» բառերն ու բառակապակցությունները: Այս հատվածների դուրս հանելը մեծ տարբերություն չի տալիս, եւ տողերի քանակը նվազում է մինչեւ 29-ի:

Պահպանակի Ար.-Բա. էջում չի պահպանվել 56-րդ նախադասության «...զ[այս ամենայն բանս...]» մասից մինչեւ 62-րդ նախադասության «[...ոչ եւ]ս...» սյունակից սյունակ հատվածը: Գիտական հրատարակության տարընթերցումներով հնարավոր է դուրս հանել միայն 56-ի կամ «ամենայն» կամ «բանս» բառերը, որոնք տողերի քանակը երկու էջերում էլ

[1] Պահպանակներում ա. սյունակի վերջին գրից մինչեւ բ. սյունակի առաջին գիրը ընդհանուր առմամբ պակասում է Բ.-ում 645 գիր, իսկ Ա.-ում 451 գիր: Պակասող հատվածների գրերի այս տվյալները բաժանել ենք մեկ տողում առավելագույն գրերի քանակին, այն է 20-ի, եւ պարզել, որ Բ.-ում տողերի ընդհանուր քանակը կարող էր լինել 32, իսկ Ա.-ում 21: Նույն հաշվումները կատարելով Գ. եւ Դ. պահպանակների հետ, պարզվում է, որ պակասող տողերի քանակը 16-ական է:

*համապատասխանեցնելու ոչ մի հնարավորություն չեն տալիս:*

*Այս էջում ուշագրավ է նաեւ այն, որ ա. սյունակում պահպանված առաջին տողի՝ 55-րդ նախադասության,* «ւք արդ. փոք[քր համարիմք մեք]» *(նկ.-ը տարբեւ) հատվածի առաջին երկու* «ւք» *գիրը, չի կարող* «արդ. փոքր» *բառերին նախորդել: Գիտական հրատարակությունում այս բառերին նախորդում է* «վաստակոց մերոց» *բառերը: Նույնի տարընթերցումներով* «ւք» *վերջավորությունը չի խմբագրվում:*[1] *Վերոհիշյալ* «վաստակոց մերոց» *բառերն առհասարակ այլ ընթերցում չունեն:*



Նկ-ում «ւք արդ փո[քր]» հատվածը, Պահպանակ Ար-Բա:

*Պահպանակի բնագիրն ավելի հետաքրքիր է դառնում հաջորդող հատվածներում: Վերծանության տարընթերցումների համեմատությունից պարզվում է, որ պահպանված հատվածներում բնագրային տարբերություն-ները ինքնատիպ են եւ այլ ձեռագրերից տարբեր: Համեմատության համար առդիր ներկայացնենք գիտական հրատարակության (ԳՀ) տեքստը՝ նախա-դասությունների համարներով ու տարընթերցումներով, ապա՝ պահպանակի (Պհպ.) համապատասխան հատվածը.*

ԳՀ-55. «...արդ փոքր համարիմք մեք[2] զչարչարանս[3] զայս առ սէր փոխարինին,[4] զոր էարկ[5] առ[6] ազգս մարդկան»:

Պհպ.-55. «...արդ փո[*քր համարիմք մեք*] զչարչարա[*նս զայս առ*] սէր փոխարի[*նին, զոր էարկ*] առ ազգս մար[*դկան*]»:

*Այնուհետեւ շարունակությունը բոլորովին տարբեր է:*

---

[1] Նախորդող տեքստը «ւք» վերծանության փոխարեն այլ՝ «ոք», «դք», «զք» կամ այլ ընթերցումներ չի տալիս:

[2] *> մեք; մեզ ] մեք*

[3] *զչարչարանքս; զչարչարանսս*

[4] *առ մեր փոխարէնին*

[5] *զոր արկ նա; էարկ նա; էարկն; արկ*

[6] *նա+ առ*

ԳՀ-55. «Իբրեւ լուաւ զայս ամենայն[1] բանս[2] մոգպետն ի դահճապետէ[3] անտի, խռովեցաւ, պղտորեցաւ[4] ի միտս իւր, եւ հատաւ քուն յաչաց նորա զբազում գիշերս»:

Պհպ.-55. «...բա]զումս խաւսե[ցաւ վասն հաւատ]ոյն որ ի քս[...պա]տմեցին մոգ[պետին...][5]»:[6]

*Մինչ պահպանակի Աբ.-Բա. էջի ա. սյունակի առաջին տողի «ւք» բառավերջին վերստին դառնալը, տեսնք, որ Բբ.-Աա. երեսի վերջից, այն է 44-ի* «երթ[այր ի վանս իւր...» *մասից 55-րդ նախադասության* «արդ. փոքր» *բառերի միջեւ պակասող հատվածում գրերի քանակը 2431 է, որ տողում տեղավորվող գրերի հնարավոր առավելագույն (20) քանակին բաժանելով ստանում ենք 121 տող: Ասել է, թե մեկ թերթի ա. երեսի վերջից բ. երես բացակայում է 121 տող, իսկ երկրորդ երեսի ա. սյունակի 8 տողի հետ՝ 129 տող: Մշո Տոնականը՝ հայերեն ամենամեծ ճառընտիրը (70,25x50,25), եռասյուն է, յուրաքանչյուր սյունակում ունի 45 տող, մեկ տողում մինչեւ 18 գիր, մեկ էջում 4860 գիր*[7]*: Եթե ընդունենք, որ պահպանակը ճառընտիր է, ապա Բբ-Աա. էջում սյունակից սյունակ 40 տողերը բաժանելով 129-ի կպարզվի, որ մայր ձեռագիրը քառասյուն է եղել, իսկ գուցե եւ ավելի: Միեւնույն ժամանակ Դբ-Գա. եւ Գբ-Դա. էջերի պակասող տողերի հաշվարկը թույլ չի տալիս այսպիսի փորձերի գիմել: Այս համեմատությունը մեկ անգամ եւս հաստատում է, թե պահպանակի բնագիրը մի սովոր հատված չի ունեցել:*

*Գիտական հրատարակությունում փորձել ենք գտնել պահպանակի* «արդ. փոքր» *բառերին նախորդող* «ւք»*-ով վերջացող եւ* «արդ» *բառով սկսվող բառակապակցություն, պարզելու համար, թե արդյո՞ք գրչական վրիպակի հետ գործ ունենք: Սակայն մեր պրպտումները արդյունք չավեցին: Փնտրեցինք այս հատվածի տարընթերցումներում եւ չգտանք ոչ մի ընթերցում, որ վերջանար* «ւք» *վերջավորությամբ եւ հաջորդեր* «արդ» *բառը: Վերոնշյալ 44-55 նախադասություններում առանց հաջորդող* «արդ» *բառի* «ւք»*ով վերջավորություն ունեն չորս բառեր: Որոնք են՝*

---

1 > *ամենայն*
2 > *բանս*
3 *ի դահճէ*
4 *խռովեցաւ եւ պղտորեցաւ*
5 *«Իբրեւ լուաւ... նորա զբազում գիշերս»* ] «...բա]զումս խաւսե[ցաւ վասն հաւատ]ոյն որ ի քս[...պա]տմեցին մոգ[պետին...]»:
6 Զպահպանված հատվածներում, ուղիղ փակագծերից ներս տեքստի մեր վերծանությունը ուղիղ գրերով են, ընկալյալ բնագրի միջոցով վերականգնվածները՝ շեղ:
7 Ա. Մաթեւոսյան, Ե՞րբ եւ որտե՞ղ է գրվել Մշո Տոնական-ճառընտիրը, Բանբեր Մատենադարանի (ԲՄ), թիվ 9, էջ 138, Երեւան. 1969: Հմմտ. ՄՄ ձեռ. թիվ 7729:

*50-ում* «...վշտաւք...» *եւ* «... ժառանգեսցուք» *(վերջինս նախադասության վերջում):*

*51-ում* «...առ նոքաւք» *(նախադասության վերջում):*

*54-ում* «...կամաւք ...» *(նախադասության մեջ):*

*Համոզված կարելի է ասել, որ պահպանակի բնագիրը 44-55 նախադասությունների միջեւ չի ունեցել մի ստվար հատված: Ճիշտ այսպես պահպանակը Բր.-Աա. էջում ամբողջությամբ բացակայում է 43-րդ նախադասությունը: Իսկ 44-ից պահպանվել է միայն.*

44. «եւ առաւել [*զահի հարաւ ի մ*]եծ սքանչել[*եացն, եւ դող*]ային ամենա[*յն մարմինքն*] նորա■, եւ թ[*մբրեալ կիսամա*]հ լինէր ի վեր[*այ տանեացն մի*]նչեւ ցառա[ւաւտն. եւ յար]ուցեալ երթ[*այր ի վանս իւր...»:*]

*Նույնը ԳՀ-ում*

44. «Եւ քանզի *անհնարին շարժեցաւ*[1] *ի* մեծ սքանչելեացն, *եւ դողացին*[2] ամենայն *մարմինքն*■ [3], եւ թմբրեալ[4] *կիսամեռ*[5] լինէր[6] ի վերայ *տանեացն մինչեւ* յառաւաւտն.[7] եւ *ի ծագել լուսոյն*[8] *իբրեւ զբազմաւրեայ հիւանդ* յարուցեալ երթ[*այր ի վանս իւր*[9], *այլ եւ ոչ ումեք իշխեաց ամենեւին պատմել զոր ինչ ետեսն»:*]

*Ակնհայտ է, որ պահպանակում նախադասություններն ավելի սեղմ են: Ի մասնավորի ԳՀ-ում երկու խոշոր տարբերություն կա.*

– «Եւ քանզի անհնարին շարժեցաւ» *փոխարեն* «եւ առաւել [զահի հարաւ]»

– *«մինչեւ յառաւաւտն. եւ ի ծագել լուսոյն իբրեւ զբազմաւրեայ հիւանդ յարուցեալ երթայր»* փոխարեն *«մինչեւ* ցառա[ւաւտն. եւ յար]ուցեալ երթ*այր»*

*Ուղիղ փակագծերում տեքստը վերականգնել ենք ամենահավանական համարած բառակապակցությամբ, որ կարող էր մեկ տող=20 գիր սահմանագիծը չհատել: Գիտական հրատարակության տեքստով նույն հատվածը հնարավոր չէր մեկ տողի վրա տեղավորել:*

*Այսպիսով Ա.-Բ. պահպանակները մեզ հնարավորություն չեն տալիս*

[1] *> եւ; եւ քանզի անհնարին շարժեցաւ ] եւս առաւել* [զահի հարաւ]

[2] *դողացին; դողացան ] եւ դողային; դողացեալ*

[3] *մարմինքն նորա ] մարմինք; մարմինք նորա*

[4] *թմբեալ*

[5] կիսամահ

[6] *լիներ*

[7] *յառաւաւտն; ցառաւօտն, ցառաւաւտն*

[8] *եւ ընդ ծագեալ լուսոյն; եւ ընդ ծագել; արեւուն ] լուսոյն*

[9] *ի վանս իւր երթայր*

ճշտելու մայր ձեռագրի իրական չափերը: Ավելին՝ կատարված հետազոտության արդյունքում պարզվում է, որ բացակայում է 43-րդ նախադասությունը, 44-րդ նախադասությունը անհամեմատ սեղմ է, իսկ 44-55 նախադասությունների միջեւ պակասող հատվածներ կան:

Ինչ վերաբերում է Գ-Դ. պահպանակներին, ապա սրանց ուսումնասիրության արդյունքում ստացած 15-ական տողերի եւ Գա.-Գր. դարձերեսի 12 տողերի պակասը թույլ է տալիս մոտավորապես վերականգնել մայր ձեռագրի չափերը: Այսպիսով, տողերի պատկերը Գ. եւ Դ. պահպանակներում հետեւյալն է.

| էջերում սյունակից սյունակ Պահպանակի էջերը | Գրերի քանակը | Տողեր ենթադրելի եւ պահպանված | տողեր |
|---|---|---|---|
| Դր-Գա | 308 | 15+ 10 | 25 |
| Գա.-Գր. դարձերես | 252 | 12+ 10 | 22 |
| Գր-Դա | 317 | 15+ 10 | 25 |

Պահպանակի Դր.-Դա. էջում ա.-ից բ. սյունակ անցումում չի պահպանվել 311-րդ նախադասության «զընկերակի[ցսն իւր եւ ասէր...» հատվածից մինչեւ 314-ի «[...յամենայն]է...» բառը: Գիտական հրատարակության տարընթերցումներով դուրս կարող են գալ միայն 311-ում «իւր» բառը, իսկ 314-ում «զայս» բառը:

Պահպանակի Գա.-Գր. էջից էջ անցումում չի պահպանվել 316-րդ նախադասության «բարբառ ի վերուստ» մասից մինչեւ 319-ի «[ընդ Ստեփան]ոսի» մասը: Գիտական հրատարակության տարընթերցումներով կարող են դուրս գալ 316-ում «ձեր» բառը, 317-ում «Քրիստոսի» եւ «իսկ» բառերը:

Պահպանակի Գր.-Դա. էջում ա.-ից բ. սյունակից սյունակ անցումում չի պահպանվել 319-րդ նախադասության «ց3ովսէ[փ. Մատիր,...]» մասից մինչեւ 321-ի «եւ միանգամա]յն...» մասը: Տարընթերցումներով դուրս կարող է գալ միայն 320-ի «3ի[սուս]» բառը:

Տարընթերցումներով բնագրի տարբեր օրինակներում պակասող այս բառերը մեկ տողի տարբերություն անգամ չեն տալիս: Ընդ որում ոչ գիտական հրատարակության բնագիրը եւ ոչ էլ տարընթերցումները բնագրի համառոտման կամ հավելման էական այլ ընթերցումներ չեն տալիս:

Մեզ մնում է պարզինել միայն պահպանակի Գա.-Գր. էջից էջ անցումում

պակասող 12 տողին ավելացնել պահպանված 10 տողերը եւ ընդունել, որ մայր ձեռագիրը ունեցել է 22 տող, ըստ այդմ համարել, որ բնագիրը երկուսից երեք տողի (40-60 գրի) տարբերություն ունի, իսկ գրության դաշտի բարձրությունը եղել է 23սմ:[1]

Փորձենք վերջին այս հաշվումը ստուգել միջնադարում ճարտարապետության մեջ ընդունված երկրաչափական մի կանոնով, որով անկախ մասշտաբից, ցանկացած տարածություն հնարավոր է բաժանել ներդաշնակորեն համաչափ ավելի փոքր մասերի:[2] Այս կանոնի էությունը հետեւյալն է. գրության դաշտի բարձրությունը հավասար է գրության նյութի լայնությանը (մագաղաթին կամ թղթին) կողմերի 2:3 համամասնությամբ: Այս կանոնի հիմնական պայմանն է՝ թերթի լայնության 1/9-րդ մասով ստեղծվում է ներքին լուսանցքը, 2/9-րդով՝ արտաքին լուսանցքը, թերթի բարձրության 1/9-րդ մասով ստեղծվում է վերին լուսանցքը, 2/9-ով՝ ստորինը:

Կանոնն օգտագործելու համար բարեբախտաբար պահպանակներում պահպանվել են սյունակների լայնքի ու միջին լուսանցքի (սյունակների միջեւ եղած տարածության) չափերը: Սյունակներից յուրաքանչյուրն ունի 7սմ լայնք, իսկ միջին լուսանցքի լայնքը 1,5սմ է, ուրեմն եւ գրության դաշտի լայնքը 15,5սմ է (2x7+1,5=15,5): Իսկ քանի որ գրության դաշտի լայնքը բարձրության 2:3 մասն է, ուրեմն գրության դաշտի բարձրությունը պետք է լինի 23,25 սմ ((15,5:2)x3=23,25): Ինչը որ, չնչին տարբերությամբ, համապատասխանում է մեր գրերի քանակով գրության դաշտը ճշտելու վերջին փորձին: Այսպիսով, գրության դաշտի չափերն են 15,5x23,5: Վերոհիշյալ կանոնի կիրառմամբ վերականգնվում են նաեւ ձեռագրի իրական չափերը, այն է 23x35:

Մատենադարանում պահվում են շուրջ հարյուր երկաթագիր ձեռագրեր: Սրանցից Ավետարաններ կամ Ավետարանի մասեր են 61-ը, Նոր կտակարանի մասեր՝ երկուսը, երեքական Ճաշոց, Ճառք եւ Մեկնություններ, երկու Մաշտոց, այնուհետեւ մեկական Ժողովածու, Տիմոթեոս Կուզի «Հակաճառություն», Գրիգոր Նարեկացու «Մատյան Ողբերգության», Կյուրեղ Երուսաղեմացու

[1] 22-ը գրության տողերի համար, իսկ 1սմ-ը գրության դաշտի տողատման վերին ճնշագիծը, որ գրության տող չի դառնում, այլ մնում է իբրեւ վերին սահմանագիծ, ի տարբերություն ստորին ճնշագծի, որ գրության տող է դառնում:

[2] Л.И. Киселева, Западно-европейская книга XIV-XV вв., Ленинград, 1985, стр. 34.

«Կոչումն ընծայության»[1] եւ Մշո Ճառընտիրը: Մշո Ճառընտիրը, ինչպես արդեն նշել էինք, ունի 45 տող, եւ այն իր տեսակի մեջ չափերով միակ եւ ամենամեծ հայերեն ձեռագիրն է (70,5x55): Ստորեւ ներկայացված ցանկը վերը թվարկված ձեռագրերի տողերի նվազագույն եւ առավելագույն քանակների եւ չափերի պարզ համադրումն է: Անշուշտ ձեռագրագիտական, եւ ի մասնավորի հնագրագիտական բոլոր տվյալների հանրագումարով միայն կարելի է սպառիչ եզրակացություններ անել: Ձեռագրի չափերից կարող ենք պատկերացում կազմել՝ թե մատյանը «առտնին», «առձեռն», «ծիսական» թե այլ նպատակների համար է օրինակվել:

| | տողեր | Ձեռ. նվազ չափերը | Ձեռ. առավ. չափերը |
|---|---|---|---|
| Աւետարանք | 15-25 | 14,3x10,3 | 42x32,5 |
| Գործք եւ թուղթք առաքելոց | 15 | 31x24 | -- |
| Թուղթք Պօղոսի առաքելոյն | 17 | 18,5x12,5 | -- |
| Ժողովածու | 27-33 | 21,3x16,3 | -- |
| «Կոչումն ընծայութեան» | 21 | 27x23 | -- |
| Ճաշոցք | 17-21 | 21x16 | 39x24,5 |
| Ճառք | 20-25 | 25,5x18,5 | -- |
| Մեկնութիւնք | 21-30 | 28x21,7 | 37,5x25,5 |
| Մաշտոցք | 17-24 | 25,5x17 | 40,25 |
| «Մատեան Ողբերգութեան» | 22 | 22,5x15 | -- |

Մայր ձեռագրի վերականգնված 35x23 չափերից կարող ենք միայն ենթադրել, որ այն ավելի շուտ Ճառընտիրի մաս է, քան թե Պատմագրքի:[2]

## Պահպանակի գրության ժամանակը

Պահպանակի գիրը կանոնավոր մանր ուղղագիծ երկաթագիր է, գրի բարձրությունը՝ 0,3սմ, ստեղնի լայնքը՝ 0,1սմ: Ուշագրավ են թե գլխագրերը՝

[1] Ս. Քոլանջյանի վերականգնած օրինակը: Տե՛ս Ս. Քոլանճեան, Նորահայտ պատառիկներ Կիւրեղ Երուսաղեմացու Թ. դարի գրչագրից, «Բանբեր Մատենադարանի», 1960, թիվ 5, էջ 201:

[2] Կարելի է անշուշտ պարզել նաեւ մայր ձեռագրի թերթերի քանակը, սակայն մեզ համար պարզ չէ, թե Եղիշեի «Վարդանանց պատերազմի» որ խմբագրության հետ գործ ունենք:

եւ թե Շ, Չ, Պ, Ջ, գրերը՝

Պահպանակի ժամանակը ճշտելու ամենահեշտ ճանապարհն, անշուշտ, պահպանված գրերը թվակիր երկաթագիր ձեռագրերի գրչության հետ համեմատելն է: Իսկ պահպանվել են այբուբենի գրեթե բոլոր տառերը: Պակասում են միայն «ժ»ն եւ «ճ»ն: «Հայկական հնագրության ալբոմի» գրերի ժամանակագրական աղյուսակում[1] պահպանակի գրերի հետ արտաքին նմանությամբ ամենամոտ ձեռագրերը երկուսն են, մեկը 1173-ին Դրազարկում (Կիլիկիա) գրչագրված Մատենադարանի թիվ 3845 «Թուղթք Պօղոսի» մատյանն է (ՄՄ3845)[2], իսկ մյուսը՝ 1174-ին Եդեսիայում գրչագրված Չեսթեր Բիթի գրադարանի թիվ 554 Ավետարանը (ՉԲ554)[3]: Անշուշտ կարելի է այսքանով հարցը պարզված համարել, եւ ասել, որ պահպանակը, Կիլիկյան կամ Եդեսիայի գրչության օջախների միջավայրում օրինակված, ԺԲ դարի ձեռագիր է: Սակայն, ինչպես ցանկացած գիտության, այնպես էլ հնագրագիտության հիմնական առաքելությունը առաջադրված խնդիրը հնարավորինս պարզաբանելն ու խնդրին մոտենալն է:

Ամուր հնագրագիտական-ձեռագրագիտական հետազոտությամբ ստեղծված հենքը թույլ կտա բնագրագիտական-աղբյուրագիտական ուսումնասիրությունների լինել առավել տրամաբանված եւ փաստարկված: Ուստի շարունակելով պետք է նկատենք, որ նույն գրչի ձեռքի տակ անգամ, հաճախ միեւնույն էջում գրերը կարող են այնպես տարբերվել գծագրությամբ, որ եթե ուրիշ մի էջում լիներ, պիտի ենթադրեինք, թե այլ գրչի գիր է: Այգպիսի գրեր

---

1 M. Stone, D. Kouymjian, H. Lehman, Album of Armenian paleography, Aarhus, Danmark, 2002, pg. 199-201, 516, plate 41, 42.

2 Գ. Յովսէփեան, Յիշատակարանք ձեռագրաց, Հատոր Ա., Անթիլիաս, 1951, էջ 449-450: Ա. Մաթեւոսյան, Հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, Ե-ԺԲ դարեր, Երեւան, 1988, էջ 209-210:

3 Der-Nersessian, S. 1958, The Chester Beatty Library. A Catalogue of the Armenian Manuscripts, Dublin, pg.12-14. Ա. Մաթեւոսյան, Հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, Ե-ԺԲ դարեր, Երեւան, 1988, էջ 217: Ա. Մաթեւոսյանը հիշատակարանը քաղել է ՄՄ 6273 ձեռագրից, Փիրղալեմյան, Նշխարք, էջ 26-27:

*են պահպանակում մի քանի անգամ տարբեր գրքերում պահպանված «Զ» եւ «Ջ» գրերը, որոնք մեկ նման են Ավետարանի, մեկ՝ «Թուղթք Պօղոսի» մատյանի գրին (տե՛ս նկ.1): Հստակ տարբերվում են «Յ» գիրը: Չնայած պիտի ասել, որ մնացած բոլոր գրերը, մանր, ոչ էական բացառություններով, մեկը մյուսին նման են: Այսուհանդերձ մեկ-երկու տվյալի համընկնումով կամ տարբերությամբ չի կարելի վստահ ենթադրություններ անել: Միայն հնագրական տվյալների համադրմամբ առավելագույն համընկնումները կարող են թույլ տալ ճշտելու պահպանակի գրչության մոտավոր ժամանակը, պարզաբանել գրչության կենտրոնը եւ նույնիսկ ճշտել գրչի անունը:*

*Ամփոփելով՝ ստորեւ ներկայացնում ենք պահպանակի մայր ձեռագրի վերականգնված նկարագրությունը եւ բնագրային կարեւոր ընթերցումները:*

Մայր ձեռագիրը

Ճառընտիր՞: Եղիշէ, «Վասն Վարդանայ եւ հայոց պատերազմին»:

*Մասն*՝ է եղանակից: *Ժամանակ*՝ ԺԲ դար: *Վայր*՝ [Կիլիկիա ?];

*Պահպանված հատվածները կարգալ*՝ Բբ-Աա՝ 35-36; 42: Աբ-Բա՝ 55-56; 62-63: Դբ-Գա՝ 310-311; 314-316: Դա-Գբ՝ 317-319; 321-324:

*Թերթեր*՝ 4 (ԱԲ+ԳԴ), *մեկական թերթեր երկայնքով ծալված: Չափեր*՝ [23x35]: *Կտրատված*՝ ԱԲ-ն՝ ներքին եզրով, ԳԴ-ն՝ պահպանվել է միջին մասը: *Գրականիշեր*՝ չեն պահպանվել: *Նյութը*՝ մագաղաթ: *Ներկա չափերը*՝ ԱԲ-ն 9x13,5; ԳԴ-ն 10x13,5: *Գրություն*՝ երկսյուն:

*Գրի դաշտ՝ (վերականգնված)* [23,5x15,5]: *Տող*՝ Բբ-Աա;Աբ-Բա-8: Դբ-Գա;Դա;Գբ-10: *Գիր*՝ մանր ուղղագիծ երկաթագիր: *Գրության տող*՝ 0,7սմ: *Գեղարվեստական հարդարանք*՝ չիf:

Սյունակների չափերը՝ *Ա սյունակ*՝ 7սմx[23,5սմ]; *Բ սյունակ*՝ կիսված 3,5սմ+[3,5սմ]x[23,5]սմ: *Սյունակների միջեւ*՝ 1,5 սմ:

*Տող*՝ [22]: ԱԲ-ում՝ 8; ԳԴ-ում 10: *Երկարությունը*՝ [15,5]: *Տողի բարձրությունը*՝ 1սմ: *Տողամիջյան հեռավորություն*՝ 0,7մմ: *Տողատման ձեւը*՝ ճնշմամբ:

*Գրի բարձրությունը*՝ 0,3սմ: *Ստեղնի լայնքը*՝ 0,1սմ, *ստեղնի գրության տողի հետ անկյունը*՝ 56°: *Գրերի միջին քանակը տողի վրա* ՝17-20: *Գրերի քանակը էջում* 2x(20x22)=880:

Բնագրագիտական

*Երվանդ Տեր-Մինասյանի քննական բնագրում օգտագործված ձեռագրերը պակասող մասեր ունեն Եղիշեի «Վարդանանց պատերազմի» հետեւյալ հատվածներում.*

Ճառընտիրներում Ե. եղանակի 4-44; 86-109 նախադասությունները:
Զ. եղանակում 1-104; 1-107; 1-167; 112-156,
Է. եղանակում 214-283,
ինչպես նաեւ Զ.167-Է.20 նախադասությունները:
Պատմագրքերում Ե. եղանակի 80-88 եւ
Զ. եղանակում 19-24 նախադասությունները:

ՄՄ 11140 ձեռագրի պահպանակներում բացակայում են՝

- Է. եղանակի 44-55 նախադասությունների միջեւ մի տովար հատված,
- 43-րդ նախադասությունը բացակայում է ամբողջությամբ:

Պահպանակի էական, քննական բնագրում չհանդիպող ընթերցումներից են նախադասություններ 44-ի եւ 55-ի տարընթերցումները:

Շատ էական է միայն պահպանակում հանդիպող՝ «եւ միւս եպիսկոպոսն Թագիկ անուն յԱսորեստանի» հատվածում «Թագիկ» ընթերցումը (նախ.322):[1]

Եղիշեի «Վարդանանց պատերազմի» 1957թ-ի գիտական հրատարակությունից հետո նոր բնագրագիտական-աղբյուրագիտական աշխատանքներ չեն կատարվել, կամ գոնե մեզ հայտնի չեն: Չնայած որ շատ են Եղիշեի «Վարդանանց պատերազմի» գեղարվեստական, աստվածաբանական, կրոնադավանաբանական եւ այլ հարցերի մասին պատմաքաղաքական վերլուծություններով հրապարակումները:

Հայ ժողովրդի կենսափիլիսոփայության վրա հսկայական ազդեցություն թողած Եղիշեի երկը, որով դաստիարակվել, ոգեշնչվել եւ ազատագրական սրբազան պատերազմի են նետվել բազմաթիվ սերունդներ, այսօր, այնուամենայնիվ, լուրջ քննության, վերարժեւորման կարիք ունի: Երկրորդելով Եր. Տեր-Մինասյանին՝ ասենք, որ Եղիշեի «Վարդանանց պատերազմի» սկզբնագիր

---

[1] Գիտական հրատարակությունում կան «Թաթիկ» եւ «Թոդիկ» ընթերցումները: Համաձայն Հր. Աճառյանի «Հայոց անձնանունների բառարան»ի Ե. դարի երկու Թաթիկ է հայտնի, որոնցից՝

ա. «Թաթիկ, աշակերտ Ս. Մեսրոպի, մասնակցեց նրա հուղարկավորության եւ թաղման հանդեսին (439թ.): Եղավ կրոնավոր Օշականի նորակերտ տաճարում: - Խոր. Գ. կէ. - գրված Թադիկ՝ Կոր. 27. Փ. Կոր. 32, 34: - Չամչ. Ա. 534 եւ Ազգապ. 393 նույն են համարում»:

բ. «Թաթիկ եպիսկոպոս Բասենի, մասնակցեց Արտաշատի ժողովին (449թ.)՝ պատասխանելու համար Միհրներսեհի նամակին: Ղեւոնդեաններից առաջ հշվեց Պարսկաստան եւ նահատակվեց Ասորեստանում, այն է Խուժաստան (454թ.): - Եղիշ. 22, 139. Փարպ. Իգ., խբ., Վրդ. Իէ., - Թադիկ՝ Յայսմ. Յուլ. 31 - սեռ. Թաթկայ՝ Փարպ. խբ.»:

Տե՛ս Հր. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, Երեւան. 1944:

*օրինակը վերականգնելու համար, հետագա խմբագրումների, հավելումների ու համառոտումների տրամաբանությունն ու պատճառները, հնարավոր ներմուծումների նպատակն ու ոճը պարզելը, պատմագրքի բնագրային-խմբագրական շերտերը ու դրանց կատարման ժամանակը ճշտելը երկի բնագրագիտական-աղբյուրագիտական քննության նպատակը պետք է լինի: Իսկ երկի հնագույն օրինակներից մնացած մասունքների՝ պատառիկ-պահպանակների ուսումնասիրությունը այս աշխատանքներին կարեւոր նպաստ կարող են բերել:*

*Մինչ բնագրագիտական-աղբյուրագիտական այդօրինակ մի աշխատանքի անցնելը՝ առաջիկայում լույս կընծայենք Եղիշեի «Վարդանանց պատերազմի» եւս 7 պատառիկների վերծանությունները:*

## Պահպանակ Բբ-Աա. 35-36, 42

| | | |
|---|---|---|
| | 1<br>2<br>3<br>4<br>5<br>6<br>7<br>8<br>9<br>10<br>11<br>12<br>13 | *[նշչել, եւ տեսանէր զանձ*<br>*ն իւրաքանչիւր կապելո*<br>*ցն, զի իբրեւ զկանթեղ ան*<br>*շիջանելի վառեալ բորբ*<br>*ոքէր: 37 Զահի մեծի հարաւ, եւ*<br>*սաէր ընդ միտս իւր....*<br>*40 Եւ ոչ կարէր*<br>*համարէն կալ ի վերայ իւրացն*<br>*երեւման: 41 Եւ մինչդեռ յայսմ*<br>*մտաց խորհրդի էր, դարձեալ*<br>*սուրբքն յիւրաքանչիւր խչ*<br>*տեկացն կանգնեցան կացին*<br>*ի սովորական պաշտամանն:* |
| *34 «...Նա եւ մեք զահի հարեալ*<br>*եմք եւ յոյժ երկնչիմք, յորժամ*<br>*տեսանեմք զայնպիսի* անճնարին<br>նեղութիւնս»: | 29<br>30<br>31<br>32 | *42 Յայնժամ ճշմարտեալ գիտաց*<br>*մոգպետն. եթէ ոչ այլ ընդ*<br>*այլոյ տեսանէր որ երեւեց*<br>*ան նմա, այլ ի նոցունց յանձանց]* |
| [34] Ն ԱՌ ԱՃ ԵՒ ԶՓԱՌԱԲԱՆՈՒ<br>ԹԻՒՆՆ■ [35] ԻԲՐԵՒ ԼՈՒԱՒ ԶԱ<br>ՅՍ ՄՈԳՊԵՏՆ, ՅԱՐՈՒՑԵԱԼ<br>ԵՐԹԱՅՐ ԻՆՔՆԻՆ Ի ՄԷՋ ԳԻ<br>ՇԵՐԻՆ ՅԵՐԴ ԲԱՆԴԻՆ■: [36] ԵՒ Հ<br>ԱՅԵՑԵԱԼ Ի ՆԵՐՔՍ ԸՆԴ ՄՈՒԹ<br>ԳԻՇԵՐՈՅՆ■, ԱՅՆ ԻՆՉ ԼԻՆԷՐ<br>ՆՈՑԱՅ Ի ՊԱՇՏԱՄԱՆԷՆ ՀԱ | 1<br>2<br>3<br>4<br>5<br>6<br>7<br>8 | [42]ՓԱՅՂԷՐ ԼՈՅՍ[*ատրութիւնն:*][43]<br>[44]ԵՒՍ ԱՌԱՒԵԼ [զահի հարաւ ի մ]<br>ԵԾ ՍՔԱՆՉԵԼ[*եացն, եւ զող*]<br>ԱՅԻՆ ԱՄԵՆԱ[*յն մարմինքն,* ]<br>ՆՈՐԱ■, ԵՒ Թ[*մբրեալ կիսամա*]<br>ՀԼԻՆԷՐ Ի ՎԵՐ[*այ տանեացն մի*]<br>ՆՉԵՒ ՅԱՌԱ[ւաւտն. եւ ... յար]<br>ՈՒՑԵԱԼ ԵՐԹ[*այր ի վանս իւր,* |

34 [...նեղութիւն]ն (*նեղութիւնս; նեղութիւնան*) առ ա[ստուա]ծ եւ զփառաբանութիւնն (> առ աստուած եւ զփառաբանութիւնն)

35 իբրեւ (*եւ իբրեւ*) լուաւ զայս (> *լուաւ զայս; զայս լուաւ*) մոգպետն, յարուցեալ երթայր ինքնին (~ *ինքնին երթայր*) ի մէջ (*ի մէջ*) գիշերին յերդ (*յերդ; յերդս*) բանդին (~ *բանդին ի մէջ գիշերին; բանտի; գիշերի*)

36 եւ հայեցեալ ի ներքս (*ի ներս*) ընդ մուք (*մութն*) գիշերոյն (*գիշերին*), այն ինչ լինէր (*լսէր*] լինէր) նոցա ի պաշտամանէն հա[*նգչել,*]

42 ... [*այդ ի նոցունց յանձանց*] փայղեր (*փայլէր*) լուսատրութիւնն:

43 > *Յայնժամ կրկին անգամ զահի հարաւ եւ սաէ. «Մեծ ի կապելոցն եղեւ այսպիսի յայտնութիւն. Ես եւ ոչ զմի ոք ոչ գիտեմ, եւ ոչ լուեալ է իմ ի հարցն յառաջնոցս;*

44 եւս առաւել [(*եւ* (> *եւ; եւ քանզի անհնարին շարժեցաւ* ] *եւս առաւել* [զահի հարաւ]) զահի հարաւ ի մ]եծ սքանչել[*եացն. եւ զող*]ային (*զողացին; զողացան* ] *եւ զողային; զողացեալ*) ամենա[*յն մարմինքն*] նորա■ (*մարմինքն* ] *մարմինք նորա*), եւ թ[*մբրեալ*] (*թմրեալ*) *կիսամա*]հ (*կիսամեռ*) լինէր (*լինէր*) ի վեր[*այ տանեացն մի*]նչեւ ցառա[ւաւտն. (*յառաւաւտն; ցառաւօտն*) եւ *ի ծագել լուսոյն* (*եւ ընդ ծագեալ լուսոյն; եւ ընդ ծագել; արեւուն* ] *լուսոյն*) *իբրեւ զբազմաւրեայ հիւանդ* յար]ուցեալ երթ[*այր ի վանս իւր* (*ի վանս իւր երթայր*), *այլ եւ ոչ ումեք իշխեաց ամենեւին պատմել զոր ինչ եւտեսն:*]

## Պահպանակ Աբ-Բա. 55-56, 62-63

| | | |
|---|---|---|
| | 1 | *այս ամենայն բանս մոգպետն* |
| | 2 | *ի զարհուրանէ անտի, խռով* |
| | 3 | *եցաւ. պղտորեցաւ ի միտս իւր.* |
| | 4 | *եւ հատաւ քուն յաչաց նորա* |
| | 5 | *զբազում գիշերս: 57 Իսկ յա* |
| | 6 | *ւուր միոջ յերեկոուն պա* |
| | 7 | *հուն յարուցեալ երթայր առ* |
| | 8 | *նոսա միայնիկ մեկին, եւ ոչ* |
| | 9 | *զոք առնոյր ընդ իւր ի սպաս* |
| | 10 | *աւորացն: 58 Եւ իբրեւ եհաս* |
| | 11 | *ի դուրս տանն, հայէր ընդ* |
| | 12 | *ծակ մի ի ներքս եւ տեսանէր* |
| | 13 | *ըստ առաջին տեսլեանն. բայց* |
| | 14 | *նորա ի քուն կային խաղաղիկ:* |
| | 15 | *59 Հեզաբար կարդաց յանուանէ* |
| | 16 | *զեպիսկոպոսն, քանզի քաջ իսկ գիտէր պարսկերէն: 60* |
| | 17 | *Եկն ի դուրս եւ հարցանէր. «Մ՞վ ես դու:61 «Ես ինքն իսկ* |
| | 18 | *եմ, ասէ. Կամիմ ի ներքս մտանել եւ տեսանել զձեզ»: 62 Եւ*<br>*իբրեւ եմուտ ի մէջ սրբոցն, ոչ եւ* |
| ] [55]ԻՔ= ԱՐԴ ՓՈ | 19 | [62]Ս ԵՐԵՒԵՐ ՆՇԱՆՆ=. ԵՒ ՊԱՏ |
| [*քր համարիմք մեք*] ՁՉԱՐՉԱՐԱ | 20 | ՄԵԱՑ ՆՈՑԱ= ՁԵՐԻՑ ԵՐԵՒ |
| [*նս զայս առ*] ՍԵՐ ՓՈԽԱՐԻ | 21 | ՈՒՄՆ ՍՔԱՆՉԵԼԵԱՑՆ=: |
| [*նին, զոր էարկ*] ԱՌ ԱԶԳՍ ՄԱՐ | 22 | [63] ԵՏ ՊԱՏԱՍԽԱՆԻ ՂԵՒՈՆԴ= |
| [*դկանս: ...բա*]ԶՈՒՄՍ ԽԱՒՍԵ | 23 | ԵՒ ԱՍԷ. «ԱՍՏՈՒԱԾ, ՈՐ ԱՍԱՑ Ի ԽԱՒ |
| [ցաւ վասն հաւատ]ՈՅՆ ՈՐ Ի ՔՍ= | 24 | ԱՐԻ ԼՈՅՍ ԾԱԳԵԼ=, ՈՐ ԵՒ ԾԱ |
| [...պա]ՏՄԵՑԻՆ ՄՈԳ | 25 | ԳԵԱՑ ԵՒ ԼՈՒՍԱՒՈՐԵԱՑ ԶԱՆ |
| [պետին... [56] *Ի*]ԲՐԵՒ ԼՈՒԱՒ Զ | 26 | ԵՐԵՒՈՅԹ ԱՐԱՐԱԾՍ=, ՆՈՅՆ |
| | | *զաւրութիւն եւ այսաւր ծագեաց,...»:* |

[55] արդ փո[*քր համարիմք մեք*] (*> մեք; մեզ ] մեք*) զչարչարա[*նս (զչարչարանքս; զչարչարանսս) զայս առ*] սեր փոխարի[*նին, (առ միոյ փոխարէնին) զոր էարկ*] (*զոր արկ նա; էարկ նա; էարկն; արկ*) առ (նա+առ) ազգս մար[*դկանս*»: ...բա]զումս խաւսե[ցաւ վասն հաւատ]ոյնորի fu[...պա]տմեցին մոգ[պետին...]

*Ընկալյալ բնագրի* «Իբրեւ լուաւ... նորա զբազում գիշերս» *հատվածի փոխարեն* «...բա]զումս խաւսե[ցաւ վասն հաւատ]ոյն որ ի fu[...պա]տմեցին մոգ[պետին...]»:

[56] [...*Ի*]բրեւ լուաւ զ[*այս ամենայն...*]

[62] [*Եւ իբրեւ եմուտ (էմուտ) ի մէջ սրբոցն, ոչ եւ*]ս երեւեր (*երեւիւր; երեւեր* նմա այլ) նշանն=. եւ (*այլ ] եւ; > եւ*) պատմեաց նոցա= (*> նոցա; երեւումն նոցա*) զերից (*զերկիցս; զերկից*) երեւումն սքանչելեացն=: (*> սքանչելեացն; զսքանչելեացն*)

[63] Ետ պատասխանի Ղեւոնդ= (*+ երէցն; Ղեւոնդ երէցն; Ղեւոնս երէց; + երէց; + էրեց*) եւ ասէ. «Աստուած, որ ասաց ի խաւարի (*խաւարէ*) լոյս ծագել=, որ եւ (*> որ եւ; > որ*) ծագեաց եւ լուսաւորեաց իմաստութեամբ (*+ իմաստութեամբ; > իմաստութեամբ*) զաներեւոյթ արարածս= (*զարարածս*), նոյն...:

## Պահպանակ Գա-Դբ. 310-311; 314-316

| | | |
|---|---|---|
| [310]ԵԿ ԿՈՂՄՆ ՅԵՐԿԻՐ ԱՆԿԵԱԼ, | 1 | [314]Է ՓՐԿԵԱ ԶՆՈՍԱ [*Տէր եւ պա*] |
| ԵՒ ԴԱՐՁԵԱԼ ԱՆԴԷՆ ՊԱՏՍՊ | 2 | ՀԷ ԶԱՄԵՆԱՅՆ ՈՍ[*կերս նոցա:* ] |
| ԱՐԷՐ, ԱՌՆՈՅՐ ԶԵՌՆՆ Ի ՎԵՐ▪. | 3 | ԵՒ ՄԻ Ի ՆՈՑԱՆԷ Ո[*չ կորիցէ*] |
| ԱՂԱՂԱԿԵԱՑ ՄԵԾԱՒՁԱՅՆ | 4 | [315]ԵՒ ՄԻՆՉԴԵՌԵՒՍ Յ[*ոյժ ի մարմն*] |
| ԻՒ ԵՒ ԱՍԷ▪. «ԸՆԳԱԼ, Տ[Է]Ր, ԶԿԱՄ | 5 | ՈՅՆ ԷՐ▪ՍԿՍԱՒ [*իւրովք ա*] |
| ԱՒՈՐ ԶՊԱՏԱՐԱԳՍ ՈՐ ԻՆՁԷ | 6 | ԶԱՒՔՆ ՀԱՅԵՑԵԼ[ *տեսանէր*] |
| Ն ԶԻՍ ՔԵԶ ՄԱՏՈՒՑԻ ԲՈԼՈՐՈՎ | 7 | ՅԵՐԿՆԻՑ ԻՋԵԱԼ[ *եկեալ գունդս բազում հրե*] |
| ԻՆ,▪ ԵՒ ԽԱՌՆԵԱ ԶԻՍ Ի ԳՈՒՆ | 8 | ՇՏԱԿԱՑ▪ ԵՒ ՎԵՑ[ *պսակ ի ձեռ*] |
| Դ ԶԻՆՈՒՈՐԱՑՆ»▪: [311] ԴԱՐՁԵԱԼ | 9 | ԻՆ ՀՐԵՇՏԱԿԱՊԵ[*տին:* [316]*Դ*] |
| ՔԱՋԱՅԼԵՐԵՐ ԶԸՆԿԵՐԱԿԻ | 10 | ԱՐՁԵԱԼ ԵՒ ԼՍԵԻՆ[ *բարբառ ի վերուստ,* ] |
| | | |
| *ցան իւր եւ ասէր. «Հա՛պա առաքինիք, եհաս ժամ կատարման մերոյ. խցէք զաչս մարմնոյ վայր մի, եւ այժմ տեսանէք զլոյսն մեր Քրիստոս: 312 Եւ թաւալելով ընդ արիւն անձինն իւրոյ ասէր. «Աւրհնեցի՛ց զՏէր յամենայն ժամ, հանապազ աւրհնութիւն նորա ի բերան իմ: 313 Ի տէր պարծեսցի անձն իմ, լուիցեն հեզք եւ ուրախ եղիցին": Եւ անկեալ զսաղմոսս զայս կատարէր մինչեւ ցայս տեղի. "Բազում նեղութիւնք են արդարոց. յամենայն* | | |

[310] [*եւ նորա յահ*]եկ (*յահեակ; ահեակ*) կողմն յերկիր (>*յերկիր*) անկեալ (*ի վայր անկեալ*), եւ (>*եւ*) դարձեալ անդէն (*անդրէն*) պատսպարէր [*պարապարէր !* ], առնոյր ձեռնն (*զաջ ձեռն; զաջ ձեռնն*) ի վեր▪. աղաղակեաց մեծաւ ձայնիւ եւ ասէ▪. «Ընգալ (*ընկալ*), Տ[է]ր, զկամաւոր զպատարագս՝ (*պատարագս*) որ (*զոր*) ինձէն (*ես ինձէն*) զիս քեզ մատուցի բոլորովին (*բոլորովիմբ; բոլորովին; զբոլորովին; բոլորովիմ*),▪ եւ խառնեա զիս ի գունդ զինուորացն (*սուրբ զինուորացն; զինուորաց*)»▪:

[311] Դարձեալ քաջայլերեր զընկերակի [*ցան իւր եւ ասէր....*]:

[314] [*...յամենայն*]է փրկեա (*փրկէ*) զնոսա [*Տէր եւ պա*]հէ զամենայն ոս[*կերս նոցա (ոսկերս նոցա*] եւ մի ի նոցանէ ո[*չ կորիցէ (>եւ մի ի նոցանէ ոչ կորիցէ; կորիցեն)»*]:

[315] Եւ մինչդեռեւս յ[*ոյժ (եւ մինչդեռ կայր ոյժ; յուշի ] ոյժ; յաժի մարմնոյն) ի մարմն*]ոյն էր▪ սկսաւ (*սկսաւ ] սակաւիկ մի; սակաւ; սակաւ մի*) [*իւրովք (իւրով) ա*]չաւքն (աչաւք; *աչօքն իսկ*) հայեցել (*հայեցեալ*) [*տեսանէր*] յերկնից իջեալ (*տեսանէր յերկնից եկեալ տեսանէր!; երկնից*) [*եկեալ (եկեալ իջանէր; եկեալ իջեալ; >եկեալ) գունդս (գունդ) բազում հրե*]շտակաց▪ եւ վեց[ *պսակ ի ձեռ*]ին (*ի ձեռն*) հրեշտակապե[*տին:*

[316] [*դ*]արձեալ եւ (>*եւ;* >*եւս*) լսեին[ *բարբառ ի վերուստ, որ ասէր....*]

## Պահպանակ Դա-Գր 317-319; 321-324

| | | |
|---|---|---|
| *որ ասէր. «Քաջալերեցարուք, սիրելիք իմ, զի ահա մոռացայք զվշտալի կեանս, եւ հասէք երանելի պսակացդ, որ ձերով ճարտարութեամբդ կազմեցէք. առէք զեք յիւրաքանչիւր գլուխ: 317 Զի նիւթ պատրաստական ի ձէնջ գործեալ հիւթեցաւ, իսկ ճարտարութիւն գործոյդ յամենաստրբ ձեռացն Քրիստոսի կազմեցաւ. զոր ի սպասաւորաց այտի իսկ* | | *փ. «Մատիր, յառաջեա ընդդէմ սրոյն, զի դու ատրճանաւ ի վեր ես քան զամենեսեան»: 320 Եւ զայս իբրեւ ասաց, կարգեցան կացին մի ըստ միոջէ. եւ առ ճեպ տագնապի սոխալելոյ դահճացն միանգամայն հատին ընկեցին զպարանոցս երանելեացն առաջի սուրբ եպիսկոպոսին. եւ նորա ընդ հանել ոգւոցն աղաղակեաց եւ ասէ. «Տէր Յիսուս, ընկալ զոգիս մեր ամենեցուն, եւ խառնեա զմեզ ի գունդս սիրելեացն քոց»: 321 Եւ միանգամա* |
| [317][*… ընդ Սոսփան*]ՈՍԻ ԼԻՆԻՑԻՔ ՊՍ | 1 | [321]ՅՆ ԿԱՏԱՐԵՑԱՆ Ի ՏԵՂԻՈՋՆ: |
| [*ակակիցս:*] [318] ՆԱ ԵՒ ԶԱՅՆ ԵՒՍ | 2 | [322] ԵՒ ԵԹԵ ԶՄՈԳՊԵՏՆ ԵՒՍ, ՈՐ ՀԱՒ |
| [*քաջապէս*] ՏԵՍԱՆԵՐ,■ ԶԻ Դ | 3 | ԱՏԱՑ Ի ՔՍ, ԿԱՄԻՍ Ի ՀԱՄԱՐ ԱՐ |
| [*եռ եւս* ]ԻՆ ՇՈՂԱՅՐ ՍՈՒՐՆ Ի ՎԵ | 4 | ԿԱՆԵԼ, ԹՈՒՈՎ ԵՒԹՆ■. ԹՈՂ |
| [*րայ պարս*] ՆՈՑԱՑ ԵՐԱՆԵԼԵ | 5 | ԶԵՐԿՈՒՍՆ, ՈՐ Ի ՎԱՐԴԵՍՆ ԿԱՏ |
| [*ացն:* [319] *Զոր* ]ԻԲՐԵՒ ԵՏԵՍ ՍՈՒ | 6 | ԱՐԵՑԱՆ■, ԵՒ ՄԻՒՍ ԵՊԻՍԿՈՊ |
| [*րրն Ղեւոն*]Տ■, ԵԹԵ ՈՉ ԶՄԻ | 7 | ՈՍՆ ԹԱԳԻԿ ԱՆՈՒՆ■ ՅԱՍՈՐ |
| [*մի կամին հ*]ԱՐՑԱՆԵԼ ԵՒ ԴԱՏԵԼ■, | 8 | ԵՍՏԱՆԻ■: [323] ԲԱՅՑ ԱՆԴԵՆ |
| [*այլ միանգ*]ԱՄԱՅՆ ՀՐԱՄԱՆ Ե | 9 | Ի ՏԵՂԻՈՋՆ ՎԵՑՆ■, [324]324 ՍԱՀԱ |
| [*զեւ մահու,*] ԱՍԷ ՑՅՈՎՍԷ | 10 | Կ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՅՈՒՇՏՈՒՆԵԱՑ. |

---

[317] [*…ընկալեալ՝ ընդ Ստեփան*]ոսի լինիցիք պս[*ակակիցս* (*պսակակիր; «գոպսակակից*):]

[318] Նա եւ զայն եւս (*զայն իսկ*) [*քաջապէս*] տեսանէր,■ զի դ[*եռ եւս* ]ին շողայր սուրն ի վե[*րայ պարս*] նոցաց երանելե[*ացն*] (*սրբոցն / երանելեացն*):

[319] [*Զոր*] (*զոր եւ; զաս / զոր*) իբրեւ ետես սու[*րբն Ղեւոն*]տ■ (*ղեւոնդ*), եթէ ոչ (*ոչ եւս; > եւս*) զմի[*մի* (> *մի*) *կամին հ*]արցանել եւ դատել■ (> *եւ դատել*), [*այլ միանգ*]ամայն հրաման է[*զեւ մահու,*] ասէ ցՅովսէ[*փ.* (ցերանելին Յովսէփ; ցսուրբն Յովսէփ) *«Մատիր, յառաջեա…*]

[321] [*Եւ միանգամա*]յն կատարեցան (+*ամենեքեան;* + *ամենեքին*) ի տեղւոջն (*ի նմին տեղւոջ; տեղոջն սոքա*):

[322] Եւ եթե (*եթէ*) զմոգպետն եւս, որ(> *եւս; որ եւ / եւս որ*) հաւատաց ի Քս, կամիս (*կամիցիս; կամիցիս ի*) ի համար արկանել (*ընդ նոսա ի համար արկանել; համար արկանել ընդ նոսա*), թուով եւթն.■ (*են եւթն; եւթն են*) թող զերկուսն (*զերկուսն եւս;* > *եւս*), որ ի Վարդեսն (*վարդէսն; վատդէսն; վատգեստյն; վրդեսն; վրդրէսն; վարդգէսն, վատգէտսն; վարդեսն; վարդէն, վարդեան; վադէսն*) կատարեցան,■ եւ (> *եւ*) միւս եպիսկոպոսն Թագիկ (*թաթիկ; թոդիկ*) անուն■ յԱսորեստանի■ (*ի յԱսորեստանի*):

[323] Բայց անդեն ի տեղւոջն վեցն,■ (> *վեցեքին; վեցեքին սոքա; վեցքս; վեցեքեան սոքա;* > *որոց անուանքն* (*անուանք*) *են* (> *են*) *այսոքիկ*)

[324] Սահակ եպիսկոպոս յՌշտունեաց. (*ռշտունեաց; ըռշտունեաց; յռշտունեաց; յըռշտունեաց; ըշտունեաց*)

| ՊԱՀՊԱՆԱԿ | ՁՌ 554 | ՄՄ 3845 | ՊԱՀՊԱՆԱԿ | ՁՌ 554 | ՄՄ 3845 |
|---|---|---|---|---|---|
| Ա Ա Ա | Ա | Ա | | | |
| Բ | Բ | Բ | Մ Մ | Մ | Մ |
| Գ Գ Գ | Գ | Գ | Յ | Յ | Յ |
| Դ Դ Դ | Դ | Դ | Ն Ն Ն | Ն | Ն |
| Ե Ե Ե | Ե | Ե | Շ Շ Շ | | Շ |
| Զ Զ Զ | Զ | Զ | Ո Ո Ո | Ո | Ո |
| Է Է | Է | Է | Չ Չ | | Չ |
| Ը | Ը | Ը | Պ Պ | | Պ |
| Թ Թ | Թ | Թ | Ջ Ջ | Ջ | Ջ |
| | Ժ | | Ռ | Ռ | Ռ |
| Ի Ի Ի | Ի | Ի | Ս Ս | Ս | Ս |
| Լ Լ | Լ | Լ | Վ Վ | Վ | Վ |
| Խ Խ | Խ | Խ | Տ Տ | Տ | Տ |
| Ծ Ծ | Ծ | Ծ | Ր Ր | Ր | Ր |
| Կ Կ | Կ | Կ | Ց Ց | Ց | Ց |
| Հ Հ | Հ | Հ | Ւ Ւ | Ւ | Ւ |
| Ձ | | Ձ | Փ | | Փ |
| Ղ Ղ Ղ | Ղ | Ղ | Ք Ք | Ք | Ք |

Նկ. 1 Պահպանակի գրերի համադրություն թվակիր երկաթագիր ձեռագրերի հետ։



Նկ. 2, Պահպանակ Բր-Աա. 35-36, 42:



Նկ. 3, Պահպանակ Աբ-Բա. 55-56, 62-63:

